## Խղճամտութիւնը պետական կրօնք չէ

Ընկիւրիէն կը հեռագրեն 3 Ապրիլ Թուականով.— Հարիւր ինը երեսփոխաններու կողմէ ստորագրուած բանաձեւով մը Խորհրդարանէն կը պահանջուի Սահմանադրութեան մէջէն ջնջել այն յօդուածը, ուր կ'ըսուի թէ Թուրքիոյ կրօնքն է մահմետականութիւնը, ինչպէս նաեւ այն յօդուածը, որով Խորհրդարանին կը պարտադրուի կարգ մը կրօնական ձեւակերպութիւններ կատարել: Երբ այս առաջարկն ալ ընդունուի, այն ատեն Թուրքիա վերջնապէս աշխարհականացած պիտի ըլլայ, եւրոպական միւս Հանրապետութեանց պէս:

## Ի՞նչ որոշեց Տիգրանակերտի ժողովը

Անատոլուի գործակալութիւնը կը հաղորդէ.— Արեւելեան Նահանգներու կուսակալները 17 օր շարունակ ժողով գումարեցին եւ ի մէջ այլոց որոշեցին Տիարպէքիրի մէջ ընդարձակ հիւանդանոց մը բանալ: Այս հիւանդանոցին Արեւելեան բոլոր Նահանգներու մնտուկները միացեալ՝ 1000 - 1500 ոսկի ամսական գումար մը պիտի յատկացնեն: Ասկէ զատ, Արեւելեան Նահանգներու մէջ արթէզեան ջրհորներ բանալու համար մասնագէտ մը պիտի հրաւիրուի եւ իր ճանապարհածախսը եւ ամսաթոշակը պիտի ստանայ իր աշխատած Նահանգին սնտուկէն:

## Ինչո՞ւ փակուեցաւ սահմանագլուխը

Երէկ գրեցինք թէ Ալպանիոյ եւ Սերպիոյ միջեւ սահմանագլուխը փակուած է Օխրիտայի շրջանին մէջ, բծաւոր ժանտատենդի համաճարակին պատճառով:

Պելկրատի թերթերը երկարօրէն կը զբաղին այս խնդրով եւ կը գրեն թէ սահմանագլուխը փակուած է ո՛չ թէ համաճարակի հետեւանքով, այլ ծածկելու համար Ալպանիոյ զինուորական պատրաստութիւնները այդ շրջանին մէջ: Ալպանիա, կ'ըսեն, ծրագրած է զինեալ հրոսախումբեր ղրկել Սերպիա:

Ալպանիայէն Սերպիա անցնիլ ուզող բոլոր ճամբորդները սահմանէն ետ դարձուած են: Նոյնպէս Սերպիայէն կանոնաւոր անցագրով Ալպանիա մտնել ուզող ճամբորդներուն արգիլուած է ալպանական հողը մտնել:

Լրացուցիչ տեղեկութեանց համաձայն, Թիրանայի սերպ գործակատար Սթիլիա ալպանական կառավարութեան մօտ բողոքած է սահմանագլուխի փակումին դէմ: «Նովոսթի Զաղրէպ» կը գրէ թէ Ալպանացիները սահմանագլուխը գոցեցին, երբ Սերպիա ալպանական կառավարութեան ուշադրութիւնը հրաւիրեց սահմանագլուխին մօտ հրոսախումբերու համախմբումին վրայ: Սերպերը կը պնդեն թէ ո եւ է համաճարակ չկայ յիշեալ շրջանին մէջ եւ կը պահանջեն անմիջապէս վերցնել արգելքը:

Գարունը հասած ըլլալով, դարձեալ սկսած է ծայր տալ ալպանեւսերպ աւանդական վէճը:

## Համայնավար գործիչներ Յունաստանի մէջ

Աթէնքի ոստիկանութեան հրամանատարը եւ ապահովութեան տնօրէնը քննած են Մակեդոնիոյ ոստիկանական եւ վարչական իշխանութեանց տեղեկագիրները համայնավարներու գործունէութեան մասին: Վերջերս հաստատուած է որ համայնավարները մեծ եռանդ կը սպառեն Մակեդոնիոյ գիւղերուն մէջ: Տեղեկագիրները կը յայտնեն թէ Վիեննայէն բազմաթիւ գործակալներ եկած են, դիւանագիտական անցագիրներով, որոնք կապ կը պահեն Մակեդոնիոյ համայնավար պետերուն հետ: Խորհրդակցութիւններ եղած են ձեռք առնուելիք միջոցներու մասին եւ խիստ հրահանգներ ղրկուած են Մակեդոնիոյ իշխանութիւններուն:

«Նէա Իմէրա» կը տեղեկանայ թէ ոստիկանութեան հրամանատարը հրամայած է ձերբակալել այն բոլոր օտար գործակալները որոնք կը գտնուին կասկածելի շարժումներու մէջ:

## Ամերիկա-բոլշեւիկեան քարիւղ կը գնէ

Նիւ-Եորքէն կը հեռագրեն թէ Սթանտարտ Օյլ Ընկերութեան կարեւոր ճիւղերէն Վաքիւմ Օյլը նոր պայմանագրութիւն մը կնքեց խորհրդային կառավարութեան հետ՝ նոր քարիւղ գնելու համար: Այս ձեւով Սթանտարտ Օյլի կողմէ վեց տարիէ ի վեր գնուած քարիւղին ընդհանուր գումարը կը հասնի տասը միլիոն տոլարի: Քարիւղը պիտի յանձնուի Եգիպտոս եւ Հարաւային Ափրիկէ:

## Ասորի կիներ կը ծեծեն իրենց քահանան

Թուլուզէն կը հեռագրեն թէ կանեաքի մէջ Ասորիի մը կատաղան այրուելուն հետեւանքով ծագած վէճը դեռ չէ փակուած: Հրդեհին զրգիչ Եուան Սալիպա քահանան այս խնդրին առթիւ անուանարկած ըլլալով երեք ասորի կիներ՝ Դաշտուբ կատու, Սոլէյման Տանդէ եւ Նամատու կատու, բոլորն ալ քահանային ծուխերը, անոնք անցեալ Փետրուար 9ին Թուլուզի մեծ պուլվառներուն վրայ սրճարանի մը մէջ յարձակեցան քահանային վրայ եւ իրենց հովանոցները, ինչպէս նաեւ քահանային գաւազանը կոտրեցին անոր կռնակին վրայ:

Հ. Եուան Սալիպայի բողոքին վրայ, Թուլուզի պատժադատ ատեանը առջի օր 25 ֆրանք տուգանքի դատապարտեց երեք կիները, ինչպէս նաեւ 50 ֆրանք վնասուց հատուցման, որ մօտաւորապէս կը ներկայացնէ քահանայի գաւազանին արժէքը:

## Օդանաւի Արկած

Երկու ֆրանսացի օդանաւորդները՝ հազարապետ Տանեօ եւ յիսնապետ Թրէյլ առջի առաւօտ Վիլլաքուպլէի կայարանէն ճամբայ ելան Քոնկօ երթալու համար: Մեքենան խանգարուելով Տրոմ Նահանգի Փիէոլաթ գիւղին մէջ և ստիպուեցան վար իջնել: Օդանաւը ծառի մը բախելով բոնկեցաւ: Օդանաւը ամբողջովին այրեցաւ՝ իսկ օդանաւորդները այրուցքներ ստացան:

## ՄԱՆՐ ԼՈՒՐԵՐ

ԶՕՐ. ՎՐԱՆԳԷԼ, որ Պրիւսէլ կը բնակի, ծանր հիւանդ է: Փարիզէն հեռագրով Պրիւսէլ կանչուեցաւ փրոֆ. Ալէքսինսկի:

ԶՈՒԻՑԵՐԱԿԱՆ Համադաշնակցութեան նախկին նախագահ, եւ Միջազգային կարմիր խաչի նախագահ կիւսթավ Ատոր մեռաւ: Յուղարկաւորութիւնը տեղի ունեցաւ առջի օր Ժընեւի մէջ, մեծ շուքով:

## Ժամադրուեցէ՛ք





## Հ. Յ. Դ.

ՓԱՐԻԶԻ Շրջ. կոմիտէի ներկայացուցչական ժողովը վաղը Ուրբաթ երեկոյ ժամը 8ին, 60 Rue des Ecoles, La Chope Parisienneի վերնայարկը:

Վ. ալանսի *շրջ. կոմիտէի դասախօսական ժողովը վաղը Ուրբաթ իրիկուն ժամը 8ին, Դաշնակցութեան ակումբը: Կը դասախօսէ Ընկ. ԵՐՈՒԱՆԴ ԹԷՐԶԵԱՆ:*

Մարսէյլի *Պատանեկան միութեան հրապարակային դասախօսութիւնը այս իրիկուն ժամը 9ին, Գրադարան Ընթերցասրահին մէջ. կը դասախօսէ Ընկ. ԱՀԱՐՈՆ ՏԱՏՐԵԱՆ: Նիւթ՝ Դանիէլ Վարուժան:*

---

Տէր եւ տիկին Մկրտիչ Մեզպուրեան եւ զաւակունք, Տէր եւ տիկին Միհրան Մեզպուրեան եւ զաւակունք (Մանչեսթր), Տէր եւ տիկին կարապետ Ակօշեան եւ զաւակունք (Ամերիկա), Տէր եւ տիկին Մանուկ Մեզպուրեան եւ զաւակունք, Պ. Արմենակ Մեզպուրեան եւ զաւակունք, Տէր եւ տիկին Արթօ Մեզպուրեան եւ զաւակունք (Պոլիս), ինչպէս նաեւ Փափազեան, Գավանոզեան, Բաբաղամեան, Կուկուեան, Սիրաքեան եւ Թօմպուլեան ընտանիքները սրտի դառն կսկիծով կը ծանուցանեն իրենց մօր, մեծ մօր եւ ազգականին՝

ԱՅՐԻ ՏԻԿԻՆ

**ՄԱՐԻԱՄ Ս. ՄԵԶՊՈՒՐԵԱՆԻ**

*Ծնեալ (Անթիքաեան)*

ցաւալի մահը՝ ուր տեղի ունեցաւ Ապրիլ 3ին:

Յուղարկաւորութիւնը պիտի կատարուի, վաղը Ուրբաթ առաւօտ ժամը 8.30ին, Hôpital Tenon, 47 Rue Pelleport, մէթրօ Gambetta, ուսկից հանգուցելոյն մարմինը պիտի փոխադրուի Փանթէնի գերեզմանատունը:

*Մահազդ ղրկուած չըլլալով կը խնդրուի ներկայս իբր այդ նկատել:*






IMPRIMERIE - **MASSIS** - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant: H. TEURNIER

կ՚ըսուի թէ հազարաւոր ոսկի ծախսելով նորոգուած «Մէթ-րէս» ագարակին ճամբան, նորոգութիւններն աւարտելէ ուժ ամիս յետոյ անօգտագործելի վիճակի մը հասած է։ Շիլէի ճամբաներուն համար նոյն բաները կ՚ըսուին։ Զանազան տար-օրինակութիւններ տեսնուած են նաեւ Մահմուտ Փաշա-Սարը-Եար-Բիլիս ճամբաներուն շինութեան եւ նորոգութեան վերա-բերեալ գործերուն մէջ։

## Տնտեսական մեծ տագնապ Թուրքիոյ մէջ

## ՍՆԱՆԿՈՒԹԻՒՆՆԵՐԸ ԻՐԱՐ ԿԸ ՅԱՋՈՐԴԵՆ

Ավունտուք զատէներու սնանկութեան լուրը մեծ յուզում առաջ բերած է Պոլսոյ եւ Էնկիւրի հրապարակներուն վրայ։ Դատարանը սնանկութեան վճիռը ջնջելու որոշում պիտի տայ, եթէ քանի մը օրուան ընթացքին կարելի ըլլայ համա-ձայնութիւն մը գոյացնել պարտապահանջներուն եւ պարտա-տէրերուն միջեւ։ Ավունտուք զատէներու սնանկութիւնը այն-քան սարսած է մանիֆաթուրայի հրապարակը, որ եօթը ուրիշ վաճառատուններ ալ սնանկութեան վտանգին ենթարկուած են։ Ասոնցմէ զատ, բազմաթիւ վաճառատուններ իրենց գործառ-նութիւններու չափով առաւել կամ նուազ վնասներ կրած են։ Այս դասակարգին պատկանող վաճառատուններու կրած վնասը 140 հազար ոսկիի կը յանգի։

Ավունտուք զատէներէն յետոյ, առեւտրական Բ. դատա-րանը սնանկ հռչակուած է նաեւ մանիֆաթուրայի ծանօթ վաճառական Միլթիատի կէվրէկ օղլուն, որուն վաճառատունը կը գտնուի Տիլսիզեան խանին տակ։ Կէվրէկ օղլուի վաճառա-տունն ու մթերանոցները փակուած եւ կնքուած են։ Պարտա-պահանջներուն մինչեւ 15 Ապրիլ միջոց տրուած է՝ դատա-րանին դիմելով իրենց պահանջները արձանագրել տալու հա-մար։ «Սօն Սաաթ» կը տեղեկանայ թէ Պոլսոյ հրապարակին վրայ ծանօթ չորս մեծ հաստատութիւններու սնանկութեան կը սպասուի։ Կ՚ըսուի թէ ասոնցմէ մէկը մէկ միլիոն, իսկ միւսը 300 հազար ոսկի բաց ունի։ Ջեռնհաս շրջանակներու յայտարարութեանց համաձայն, ծխախոտի հրապարակն ալ ծանր տագնապ մը կ՚անցընէ ներկայիս։ Արդէն վերջերս սնան-կացաւ ծխախոտի կարեւոր վաճառատուն մը։ Յաջորդական սնանկութիւնները այնքան գէշ տպաւորութիւն գործած են, որ դրամատունները վարկի գործողութիւններ գրեթէ դադրե-ցուցած են եւ ո եւ է կերպով չեն օժանդակեր թուրք վաճառա-կաններուն։

Կ՚ըսուի թէ ծխախոտի ծանօթ թուրք վաճառական Սա-լիմ Նուրի պէյ ևս, որ 50,000 անգլիական ոսկի կը պարտի «Թուրքիոյ Ճարտարարուեստական եւ Առեւտրական Դրամա-տան», գործառնութիւնները դադրեցնելով Վիեննա մեկնած է։ Դատարանը սկսած է քննել Սալիմ Նուրիի հաշիւները, բայց սնանկութեան որոշում չէ տուած դեռ։

## «Վալլահի»ն պիտի վերնայ

Երէկ գրած էինք թէ 109 թուրք երեսփոխաններ Ազգային Մեծ Ժողովին առաջարկած են բոլորովին աշխարհականացնել թուրք հանրապետութիւնը։ «Թայմզ»ի Պոլսոյ թղթակիցը կը հեռագրէ թէ առաջարկին գլխաւոր հեղինակներն են՝ վարչապետ Ըսմէթ փաշա եւ Ազգային Մեծ Ժողովին նախագահ՝ Քեազիմ փաշա։ Ասոնք կը պահանջեն ջնջել Սահմանադրութեան Բ. և Իէ. յօդուածները, որոնց առաջինը կ՚ըսէ, «Իսլամութիւնը թուրք պետութեան կրօնքն է»։ Իսկ յօդուած 27ը կ՚ըսէ. «Կրօնական տրամադրութեանց գործադրութիւնը կախում ունի Ազգային Մեծ Ժողովէն»։

Այս առաջարկին հեղինակները կը պաշտպանեն այն տեսա-կէտը թէ հանրապետական եւ աշխարհական պետութեան մը սկզբունքին համաձայն, կրօնքը բոլորովին պէտք է բաժնուի պետութենէն։ Կասկած չկայ որ այս առաջարկը պիտի ըն-դունուի, թէեւ Սահմանադրութեան ո եւ է մէկ յօդուածը փո-խելու համար երկու-երրորդի մեծամասնութիւն անհրաժեշտ է։

Թղթակիցը կ՚ըսէ նաև թէ յիշեալ այս երկու յօդուածներուն ջնջումէն մեծ փոփոխութիւն պէտք չէ սպասել. առաջարկը պաշտպանող երեսփոխանները կ՚ըսեն թէ ատիկա պէտք չէ նկատուի քայլ մը դէպի անաստուածութիւն։ Գլխաւոր հետե-ւանքը այն պիտի ըլլայ, որ երբ նոր երեսփոխանները հայրենի-քին հաւատարմութեամբ ծառայելու երդում ընեն, փոխանակ «վալլահի» ըսելու, իրենց պատուին վրայ պիտի երդուըննան։

## Իրաքի սահմանին վրայ

«Թայմզ»ի թղթակիցը Պասրայէն կը հեռագրէ թէ էլ Պաթ-նի կողմէն դէպի Միջագետքի սահմանագլուխը կը յառաջանան Աթայպա եւ Մութայիր ցեղախումբերուն պատկանող վէհապի միացեալ ուժեր, Շէյխ Իպն Սումէյիտի եւ շէյխ Ֆէյսալ էտ Տովիշի հրամանին տակ։ Փետրուար 20ին այդ կէտին վրայ արդէն յարձակում գործած էին վէհապիները եւ անգլիական օդանաւերը պատժական միջոցներու դիմած։

Վերջին լուրերու համաձայն, վէհապիներէն մաս մը արդէն սահմանը անցած է առջի գիշեր. անգլիական օդանաւեր, գնդա-ցիրներ եւ զրահապատ հրասայլեր ղրկուած են անոնց դէմ՝ էլ Պաթնի եւ Ճարիշանի կողմերը։ Վէհապիներու ուժը կը կար-ծուի 5000 հոգի։ Կ՚ըսուի թէ Աճման եւ Հարպ ցեղախումբերն ալ կը մասնակցէին։

Մութայիր ցեղախումբը ունի 13,200 ռազմիկ, Աթայպան՝ 11,600, Հարպը՝ 9,800, Աճմանը՝ 5,800։

## Տրոցկի ողջ առողջ է

Մոսկուա պաշտօնապէս կը հերքէ Տրոցկիի Հայոց մը կող-մէ մահափորձի ենթարկուելուն լուրը։ «Տրոցկի ողջ առողջ է և լուրը յերիւրած են Խորհրդային Միութեան թշնամիները։»

Հակառակ այս հերքումին, «Տէյլ Մէյլ» կը գրէ թէ իրապէս պաշտօնական ո՚չ մէկ հերքում հասած է Փարիզ։

«Տէյլի Թէլէկրաֆ» ալ դիտել կուտայ թէ Մոսկուայի գոր-ծակալութեան հերքումները չեն նշանակեր թէ լուրը անպատ-ճառ սուտ է, քանի որ Վիէռնին, ուր Տրոցկի զոհ գացած է Հայու մը մոլեռանդութեան, Խորհրդային Միութեան մայրաքա-ղաքէն շատ հեռու է, եւ եթէ իրապէս այսպիսի դէպք մըն ալ պատահի, բոլշեւիկները շատ լաւ կրնան գաղտնի պահել զայն երկար ատեն եւ հեռագրական գործակալութիւնները ստոյգ տե-ղեկութիւններ չեն ունենար։

## Հ. Յ. Դ.

ՓԱՐԻԶԻ Շրջ. կոմիտէի ներկա-յացուցչական ժողովը այսօր Ուր-բաթ երեկոյ ժամը 8ին, 60 Rue des Ecoles, La Chope Pari-sienneի վերնայարկը։

## ՑՈՒՑԱՏԵՏՐ

ԼԻՈՆԻ Աֆիոնի Հայր. միու-թեան անդամները ընդհ. ժողովի կը հրաւիրուին 9 Ապրիլ երկու-շաբթի կէսօրէ վերջ ժամը ճիշտ 1.30ին, 19 Rue Pasteur, Պրն.Մա-նիկեանի սրճարանը։ Ներկաներու թիւը մեծամասնութիւն պիտի հա-մարուի։

*ԼԻՈՆԻ Ձ.Ե.Ո.Միութեան ժողո-վը այս Կիր. առաւօտ ժամը 8.30-ին Գրադարանի սրահը* Rue Duguesclin *262.*

### ԺԱՄԱՆԱԿԱՒՈՐ ՍԱՆԱՍԱՐԵԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՀԱՄԱԼՍԱՐԱՆԻ

Այս իրիկուն, Ֆլօրիայի մէջ ժամը 9-10, Հայոց նորագոյն պատմութիւն (Ս. Վրացեան)։

ժամը 10—11, քաղաք. տնտե-սութիւն (Ա. Խոնդկարեան)։





Սեդրակ Ոսկեան (8 Rue des Rosiers, Paris, 4e) դառն կսկի-ծով կը ծանուցանէ իր սիրելի միակ որբ եղբօր՝

### ՄԻՍԱՔ ՈՍԿԵԱՆի

դառնաղէտ մահը, որ տեղի ու-նեցաւ Ապրիլ 3ին, փարիզ, 20 տա-րեկան ծաղիկ հասակին մէջ, յետ կարճատեւ հիւանդութեան (hydropisie).

Յուղարկաւորութիւնը պիտի կատարուի վաղը Շաբաթ կէսօրէ վերջ ժամը ճիշտ 2.30ին, Hôpital Hôtel Dieu (Quai aux Fleurs), ուսկից հանգուցեալին մարմինը պիտի փոխադրուի Pantinի գե-րեզմանատունը:

*Մահազդ ղրկուած չըլլալով կը խնդրուի ներկայս իբր այդ նկատել:*



IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)
Le Gérant: H. TEURNIER

ազգեցութիւններ պիտի ունենայ Մերձաւոր Արեւելքի մէջ քաղաքական կարգի ամրացման շահագրգռուող բոլոր ազգեցութեանց կողմէ բռնուած դիրքերու ամբողջութեան վրայ։

⁂ Միլանէն կը հեռագրեն թէ Աթէնք վերադառնալէ առաջ արտաքին Նախարար Միխալաքոփուլոս սիրալիր տեսակցութիւն մը ունեցած է Մուսոլինիի հետ «այսպէս հաստատելով երկու երկիրներու բարեկամական յարաբերութիւնները։»

Միւս կողմէ Էնկիւրիէն կը հեռագրեն.

Թէվֆիք Րիւշտի պէյ Ժընեւի մէջ տեսնուեցաւ Միխալաքոփուլոսի հետ՝ երկու երկիրները շահագրգռող խնդիրներու մասին։ Երկու Նախարարները բարեկամաբար խօսեցան Էնկիւրիի մէջ երկու երկիրներու դիւանագէտներուն միջեւ կատարուած բանակցութեանց մասին։

Այս առթիւ «Տէյլի Թէլէկրաֆ»ի Աթէնքի Թղթակիցը կը հեռագրէ.—

Այստեղ կը հերքուի թէ Իտալիոյ, Թուրքիոյ եւ Յունաստանի միջեւ իրաւարարութեան եւ ոչ-յարձակողական դաշինք մը պիտի կնքուի։ Սակայն Թէվֆիք Րիւշտի պէյի եւ Յունաստանի արտաքին Նախարարին Մուսոլինիի հետ տեսակցութիւնը կը նկատուի նշան մը թէ լուրջ ջանքեր կ՚ըլլան ուսումնասիրելու համար բոլոր վէճերը եւ փարատելու վերջին տարիներս ծագած բոլոր թիւրիմացութիւնները եւ որոնք առեն առեն մեծ անհամութիւններ առաջ բերին։

## Մուսթաֆա Քեմալ կը ճամբորդէ

Վիէննայէն հեռագիր մը կ՚ըսէ թէ հակառակ Նախապէս հրատարակուած բոլոր հերքումներուն, Քէմալ փաշա յառաջիկայ Ապրիլ 14ին պիտի հասնի Աքթ-Շմէքս (Չեխոսլովաքիա) ուր պիտի դարմանուի։ Ղազիէն երկու օր վերջ, նոյնպէս Աքթ-Շմէքս պիտի հասնի Ռումանիոյ արտաքին Նախարար Թիթուլէսքու, որ կարեւոր տեսակցութիւն մը պիտի ունենայ անոր հետ։

## Պարսիկ նախարար մը սպաննուած

Թէհրանէն կը հեռագրեն Ապրիլ 5 Թուականով.— Հանրօգուտ շինութեանց Նախարար Ապտուլլահ Խան Թահմասփի սպաննուեցաւ Լուրիստանի բնակիչներուն կողմէ, որոնք դարանակալ կեցած էին Խորամապատի մօտ։

Այս լուրը ստացուելուն պէս Մէջլիսը նիստը դադրեցուց։

Շահը երէկ Թէհրանէն Խորամապատ մեկնեցաւ։

Անցած օր գրած էինք արդէն թէ Լուրիստանի ցեղախումբերը ապստամբած են եւ պարսիկ կառավարութիւնը զինուորական մեծ ուժ մը ղրկած էր զանոնք զսպելու, նոյն իսկ բոլորովին բնաջնջելու համար։

## Տրոցկիի սպանութեան շուրջ

Հէլսինկֆորսէն «Մաթէն»ի կը հեռագրեն.— Դիւանագիտական շրջանակներու մէջ ստացուած տեղեկութեանց համաձայն, որսորդութեան մը ընթացքին է որ կոմսոմոլի անդամ երիտասարդ համայնավար մը ատրճանակ պարպած է Տրոցկիի վրայ։ Հէլսինկֆորսի ռուս դեսպանատունը կը մերժէ հերքել կամ հաստատել այս լուրը։ Սակայն համայնավար շրջանակներու մէջ տրամադրութիւն կայ իբրեւ ճշգրիտ ընդունելու այս լուրը, միայն թէ կ՚ըսեն թէ արկածի հետեւանք է։

## Ռումբեր կը շարունակեն պայթիլ

Ընտրական պայքարի մը առթիւ Շիքակոյի մէջ օրական քանի մը ռումբ կը պայթի։ Մինչեւ հիմա 65 ռումբեր արձակուած են զանազան շէնքերու եւ անձերու դէմ, պատճառելով մեծ կորուստներ։ Առջի գիշեր Շիքակոյի մէկ արուարձանին մէջ պայթած ռումբ մը մեծ յուզում առաջ բերած է ամբողջ թաղին մէջ, որուն բնակիչները խելայեղ փողոց թափած են։ Անկէ քիչ առաջ, ուրիշ ռումբ մը պայթած էր ճաշարանի մը մէջ։ Ճաշարանատէրն ու իր կինը, որոնք մեծ սրահին վրան կը պառկէին, թեթեւ վէրքերով ազատեցան։

## Բոլշեւիկեան ոսկին Գերմանիա կը ղրկուի

Ինչպէս կը յիշուի, վերջերս խորհրդային կառավարութիւնը 5 միլիոն տոլար արժէքով ձոյլ ոսկի ղրկած էր Նիւ-Եորք եւ զոր ամերիկեան կառավարութիւնը կը մերժէր ընդունիլ։ Նիւ-Եորքէն հեռագիր մը կ՚ըսէ թէ այդ ոսկին «Տրէզտըն» շոգենաւով ճամբայ հանուած է դէպի Պրէմէն։



## Ժամադրուեցէ՛ք



## ՑՈՒՇԱՏԵՏՐ

ԼԻՈՆԻ Հ. Ե. Ո. Միութեան ժողովը վաղը Կիր. առաւօտ ժամը 8.30ին Գրադարանի սրահը Rue Duguesclin 262.

Հ. Մ. Ը. Մ.ի Ժուանվիլի մասնաճիւղի ֆութպոլի խումբը պիտի մրցի U. S. A. St. Moriceի առաջին խումբին հետ իրենց դաշտին վրայ։ Վաղը կիր. ժամը 2ին։ Հաւաքավայր 64 Rue de Paris, Joinville le Pont.

Հ. Մ. Ը. Մ.ի Ռօնի սու Պուայի Ա. խումբը կը մրցի վաղը կիր. S. C. Robinsonի կարեւոր խումբին դէմ։ Հաւաքավայր Porte de Versailles, ժամը 1.30ին։

ՄԱՐԶԱԿԱՆ ՄԻՈՒԹԵԱՆ (Union Sportive Arménienne)ի ֆութպոլի առաջին խումբը պիտի մասնակցի, Pavillon sous Bois քաղաքապետական Սթատին մէջ, խիստ կարեւոր Tournoi de Pâquesի մը, կազմակերպուած Սթատ տը լէսթի կողմէ։

Բաժակի այս խիստ կարեւոր մրցման «Challenge Couvert», որուն արժէքը 1800 ֆր. է, պիտի մասնակցին 4 խումբեր։ Սթատին հասցէն, 80 Ave. Jean Jaurès։

Ժամադրութիւն Հ. Մ.ի ֆութպոլիստներուն ու համակիրներուն, վաղը կիր. ժամը 12.30ին։ Sortie métro Gare de l'Est.

Վ. Հ.



Այրի տիկին Յուստիանէ Տարխանեան, պ. Արմենակ Տարխանեան եւ Օր. Սրբուհի Տարխանեան, Այրի տիկին Մաքրուհի Շալճեան եւ զաւակունք (Եգիպտոս), Տէր եւ տիկին կարպիս Քիւրքճեան եւ զաւակը (Պոլիս), պ. Արիս Շալճեան (Գերմանիա), Տէր եւ տիկ. Յովսէփ Փիշման եւ զաւակունք (Ամերիկա), Այրի տիկին Արաքսի Մէստուճեան եւ զաւակունք (Պուլկարիա), Տէր եւ տիկ. Արշամ Խավէրտեան եւ զաւակունք (Պոլիս), Տէր եւ տիկին Արամ Խավէրտեան եւ զաւակունք (Մարսէյլ), սրտի խորունկ կսկիծով կը ծանուցանեն սիրելի իրենց աղջկան քրոջ եւ ազգականին՝

ՕՐ. ԼԻՒՍԻ ՏԱՐԽԱՆԵԱՆԻ

դառնաղէտ մահը։

Յուղարկաւորութիւնը պիտի կատարուի այսօր Շաբաթ կէսօրէ վերջ ժամը 4ին, 16 Allée Victor Hugo, Le Raincy, ուսկից հանգուցեալին մարմինը պիտի փոխադրուի Ռէնսիի գերեզմանատունը։ Շոգեկառքը կը մեկնի Gare de l'Estէն ժամը 3.32։

Մահազդ չստացողներէն կը խնդրուի ներկայս իբր այդ նկատել։




IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)
Le Gérant: H. TEURNIER

կանները կը շարունակեն ստորեկրեայ ժողովներ գումարել կարգ մը տեղեր»։

Յանձնաժողովը այնքան գոհ մնացած է Զինովիեւի, Կամենեւի եւ Պիատակոֆի ընթացքէն, որ մտադիր է զանոնք կրկին ընդունիլ փարախին մէջ, թէեւ անցեալ Դեկտեմբերի համագումարը որոշած էր որ անոնք չեն կրնար վերընդունուիլ Յունիսէն առաջ։

Յանձնաժողովը ի վերջոյ որոշած է զսպողական նոր միջոցներ ձեռք առնել Տրոցկիականներուն դէմ։

## Թուրքիոյ աշխարհականացումը

Էնկիւրիէն կը հեռագրեն.— Լսելէ յետոյ վարչապետ Ըսմէթ փաշայի բացատրութիւնները, Խալք կուսակցութիւնը հաւանեցաւ փոխել Սահմանադրութիւնը, Թուրք պետութիւնը բոլորովին զատելու համար իսլամական կրօնքէն եւ զուտ աշխարհական հանրապետութիւն մը հաստատելու համար։

## Ալպանեւսերպ վէճը փակուած

Պելկրատէն կը հեռագրեն թէ Թիրանայէն հասած լուրերու համաձայն, ալպանական կառավարութիւնը հրամայած է անմիջապէս վերաբանալ սերպ եւ ալպանական սահմանագլուխները Օխրիտայի շրջանին մէջ։ Եուկոսլաւիա բողոքած էր ալպանական կառավարութեան՝ սահմանագլուխի փակման դէմ, ինչպէս գրած էինք։ Ալպանիոյ մամուլի դիւանին մէկ զեկոյցը կ'ըսէ թէ բծաւոր ժանտատենդի համաճարակը դադրած ըլլալով, փակման արգելքը վերցուած է այժմ։

## Ինչո՞ւ կը սղեն հաւկիթները

Սպանիոյ սահմանագլուխէն ստացուած հեռագրի մը համաձայն, Ֆրանսայէն օրական 4 - 500,000 հաւկիթ կ'արտածուի դէպի Սպանիա։ Ապրիլ 2ին մօտ 3 միլիոն հաւկիթ անցած է սահմանագլուխը։ Ապրիլ 3ին՝ 900,000։ Ասոր իբրեւ հետեւանք, հաւկիթը որ անցած տարուան գինին չէր իջած, սկսած է հետզհետէ բարձրանալ։

### 20 ՀԱՄԱՅՆԱՎԱՐ ՊՈՒԼԿԱՐՆԵՐ ԻԶՄԻՐԻ ՄԷՋ

«Թայմզ»ի թղթակիցը Պոլիսէն կը հեռագրէ թէ Իզմիրի մէջ ձերբակալուած են 20 պուլկար գործաւորներ, որոնք ամբաստանուած են թէ համայնավարական քարոզութիւններ կ'ընէին։ Անոնք Թուրքիայէն պիտի վտարուին։

### ՏՐՈՑԿԻԻ ՄԱՀԱՓՈՐՁԻՆ ՇՈՒՐՋ

Մոսկուայէն հեռագիր մը կը հերքէ նաեւ այն լուրը թէ Տրոցկի դիպուածով վիրաւորուած է որսորդութիւն ըրած պահուն։ Միւս կողմէ սակայն Ռիկայէն հեռագիր մը կ'ըսէ թէ Տրոցկի Թուրքիստանէն փախած եւ ապաստանած է Լեհոնիա։ Իրեն հետ փախած են նաեւ կինը եւ երկու բարեկամներ։

Վերապահութեամբ կը հրատարակենք այս լուրն ալ։

### ՅԱՐՁԱԿՈՒՄ ՄԻՍԻՈՆԱՐՆԵՐՈՒ ՎՐԱՅ

Երուսաղէմէն կը հեռագրեն թէ երկու միսիոնարներ, որոնք մերժած էին լքել Սալթի իրենց պաշտօնները, խուժանին կողմէ յարձակում կրած եւ ծանրապէս վիրաւորուած են։ Միսիոնարներէն մէկուն աչքը ելած է, միւսին ալ քիթը փրթած։














IMPRIMERIE - **MASSIS** - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant: H. TEURNIER








### ԺԱՄԱՆԱԿԱՅՈՅՑ ՍԱՆԱՍԱՐԵԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՀԱՄԱԼՍԱՐԱՆԻ

Այս առտու, Ֆլօրիայի մէջ, ժամը 10ին, ֆրանսերէն, (Դաւիթ Բէկ):

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Երիցուհի Հռիփսիմէ ճէպէճեան եւ զաւակները ինչպէս նաեւ պարագաները իրենց շնորհակալութիւնը կը յայտնեն ամէն անոնց, որոնք անձամբ կամ գրաւոր իրենց ցաւակցութիւնը յայտնեցին հոգելոյս Տ. ԳՐԻԳՈՐ ՔԱՀ. ՃԷՊԷՃԵԱՆԻ տխուր մահուան առթիւ։

ՓԱՐԻԶԱՀԱՅ Թէնիսի խումբը իր կիրակնօրեայ խաղերը պիտի սկսի Ապրիլ 15ին, BoisColombesի իր սեփական դաշտին վրայ։ Այս առթիւ միութեան անդամակցիլ փափաքողները կը հրաւիրուին գրաւոր դիմել՝ Ա. Արապեանի, 26 Rue Pierre Larousse, Paris (14e).



### ՃՈԽ ՄԹԵՐՔ

Հայկական եւ արեւելեան կրամաֆոնի փլաքներու եւ ասեղներու՝ Ամերիկայէն նոր հասած։ դիմել՝ ՊԱԼԵՆՑ ԳՐԱՏՈՒՆ, 233 Fbg. St. Martin, Paris (10e).

փափաքողներուն, ցանկը կը ղրկուի ձրիօրէն։

## Նոր երկրաշարժ Իզմիրի մէջ

Պոլսէն կը հեռագրեն Ապրիլ 10 թուականով թէ հազարաւոր անձեր խուճապի մատնուած, բացօթեայ կը գիշերեն, նոր եւ ուժգին շարժի մը հետեւանքով, որ ցնցած է ամբողջ քաղաքը եւ շրջանը: Թորպալը աւանը բոլորովին քարուքանդ եղած է: Մինչեւ հիմա կատարուած քննութիւններէն կ'երեւայ որ միայն Իզմիր քաղաքին կամ շրջաններուն մէջ 1900 տուներ քանդուած կամ վնասուած են: Կարմիր Մահիկը եւ Կարմիր Խաչը դեղ ու դարման եւ ուտելիք ղրկած են:

## Մոսկուա կ'ուզէ բանակցիլ

Թերթերը կը ծանուցանեն թէ Փարիզի խորհրդային դեսպանը ծանուցագիր մը յանձնած է կառավարութեան, խնդրելով վերսկսիլ պարտքերու բանակցութիւնները, որոնք ընդհատուած են երկար ատենէ ի վեր: Քաղքենի թերթերը կը զգուշացնեն թէ Մոսկուա կ'ուզէ օգտուիլ ֆրանսական ընտրութիւններէն, համայնավարական պրոպագանդի նիւթ հայթայթելու համար:

## Ողողումներ Հայաստանի մէջ

Մոսկուայէն կը հեռագրեն Ապրիլ 10 Թուականով.— Անդրկովկասի գետերը յորդելով, կարեւոր վնասներ պատճառեցին: Հայկական գիւղի մը մէջ ինը հոգի խեղդուեցան հեղեղէն քշուելով: Կառախումբերու երթեւեկը ընդհատուած է Անդրկովկասեան երկաթուղիի հարաւային գծին վրայ:

## Նորէն Չիչերինի հրաժարականը

«Տէյլի Թէլէկրաֆ»ի համաձայն, Մոսկուայէն հեռագիր մը կը հաստատէ Չիչերինի մօտալուտ հրաժարումը: Արտաքին գործավարը տկար ըլլալով, Մայիսին պիտի քաշուի եւ Գահիրէ պիտի երթայ, դարմանուելու համար: Կը հաւաստեն թէ յաջորդն ալ նշանակուած է, Լիտվինոֆ, որուն առաջին օգնականը պիտի ըլլայ Գարախան, իսկ երկրորդը՝ Լունաչարսկի: Ու վերջապէս կ'ըսուի թէ կրթական գործավար պիտի ըլլայ գրագէտ Մաքսիմ Կորքին, իր վայելած ժողովրդականութեան համար:

## Խռովութիւն Շիքակոյի մէջ

Շիքակոյէն կը հեռագրեն թէ արտասովոր միջոցներ ձեռք առնուած են, Իլինոյզի նոր կառավարիչին ընտրութեան առթիւ: Հինգ հազար ոստիկաններ կը հսկէին քուէատուփին քով, որոնց պաշտպանութեան համար կանչուած էին նաեւ 2000 կամաւորներ եւ հազար գաղտնի ոստիկաններ: Կիրքերը այնքան գրգռուած էին որ, շրջանապետ Թէյլըր բրածեծ սպաննուեցաւ, ուրիշ 5 պաշտօնեաներ առեւանգուեցան, իսկ երկու հոգի վիրաւորուեցան: Շատ մը ընտրողներ բռնի դուրս հանուեցան քուէարկութեան սենեակէն, առանց իրենց քուէները տալու:

## Մոսկուայի գործակալը ձերբակալուած

Տեղական թերթերը երկար մանրամասնութիւններով կը նկարագրեն Մոսկուայի պատուիրակ եւ կոմունիստ կուսակցութեան ընդհանուր քարտուղար՝ Ռիշար Շուլլէրի ձերբակալութիւնը Փարիզի մէջ:

Այս գործակալին ներկայութիւնը մատնանշուած էր Յունուար 6ին: Անցեալ կիրակի, Շուլլէր խօսեր է Համայնավար - Երիտասարդութեան ժողովին մէջ, Սէն Տընի: Առջի օր, նոր ժողով մը տեղի կ'ունենար միեւնոյն տեղը եւ գործակալը նորէն պիտի խօսէր. բայց ոստիկանութիւնը որոշեց ձերբակալել: Զորս քննիչներ սրահ ներկայանալով, մարդուն թուղթերը պահանջեցին: «Քովս չեն», պատասխանեց Շուլլէր եւ տանը հասցէն տուաւ: Ոստիկանները հրամայեցին որ իրենց հետեւի: Հարիւրի մօտ համայնավարներ թոյլ չտուին, բայց քննիչները կրցան առնել տանիլ: Հարցաքննութեան ատեն, գործակալը, որ ինքզինքը «Ժան» կը կոչէր, խոստովանեցաւ իր ինքնութիւնը: Յայտնեց թէ Վիէննա ծնած է եւ հրապարակագիր է: Երկու անգամ Մոսկուա գտնուած է, նաեւ Պերլին: Ոստիկանական տեղեկագիրը կ'ըսէ թէ Շուլլէր Մոսկուայի Համայնավար Միջազգայինին պատուիրակներէն մէկն է, եւ պաշտօն ունի կանոնաւորապէս հրահանգները հաղորդել Ֆրանսայի եւ արտասահմանի համայնավարներուն: Փարիզ եկած է եղեր աւելի յեղափոխական թափ տալու համար կարմիրներու քաղաքականութեան:

Ներքին Նախարարին հրամանով, Երեքշաբթի օրն իսկ սահմանէն դուրս հանուեցաւ գաղտնի գործակալը:

## Ճափոնի մէջ ալ...

Քանի մը շաբաթէ ի վեր, ճափոնական կառավարութիւնը խստօրէն կը հետապնդէր համայնավարները: Գրաքննութիւն հաստատուած ըլլալով, մինչեւ հիմա թերթերը չէին կրնար լուր տալ: Այժմ գրաքննութիւնը թուլցած է եւ Թոքիոյէն կը հեռագրեն թէ ձերբակալուած համայնավարներուն թիւն է 1013: Կ'ըսուի թէ անոնք դաւադրական լայն ցանց մը կազմակերպած էին կայսեր դէմ: Քննութիւններէն կը հետեւի թէ Ճափոնի վերջին ընտրութեանց ընթացքին մեծ գումարներ հասած են Մոսկուայէն: Կառավարութիւնը շատ ծանրակշիռ կը նկատէ այս դէպքը եւ Մոսկուայի միջամտութիւնը բուռն զայրոյթ պատճառած է:

## 12 միլիոն ամերիկուհիներ գործի վրայ

Ամերիկեան թերթերը կը ծանուցանեն թէ՝ յառաջիկայ ընտրութեանց առթիւ, բանախօսութիւններ տեղի պիտի ունենան 48 նահանգներուն մէջ, իբրեւ ճնշում Ծերակոյտին վրայ, որպէսզի դաշնագիրներ կնքէ պատերազմը ջնջելու համար: Այս ժողովները սարքած են ինը անջատ կազմակերպութիւններ, որոնք 12 միլիոն կին կը ներկայացնեն եւ որոնց բաղձանքն է ապացուցանել թէ հանրային կարծիքը կուսակից է պատերազմը օրէնքէ դուրս հռչակելու:

## Մակեդոնացիներու գործունէութիւնը

«Շիքակօ Թրիպիւն» Աթէնքէն կ'իմանայ թէ մակեդոնական բազմաթիւ հրոսախումբեր նոր յարձակումներ կը պատրաստեն Ապրիլի վերջերը, յոյնեւսերպ սահմանին վրայ: Կ'ըսուի թէ միեւնոյն ատեն ուրիշ խումբեր պիտի յարձակին սերպեւպուլկար սահմանին վրայ: Յունաստանի զինուորական իշխանութիւնները միջոցներ ձեռք առած են, շարժումը խափանելու համար:



## Հ. Յ. Դ.

«Հրազդան» խումբի ժողովը այս երեկոյ ժամը 8,30ին ծանօթ հաւաքատեղին: Կը խօսի ընկ. Հ. Սարգսեան: Նիւթ «Ռուսաստանի ապագայ քաղաքական դրութիւնը եւ Հ. Յ. Դաշնակցութեան դիրքը»:

## ՑՈՒՑԱՏԵՏՐ

ՅԱՐԴԳՈՂԻ գրական երեկոն, Ֆլօրիայի մէջ այսօր Հինգշաբթի ժամը 9ին: Ոստանիկ պիտի կարդայ իր քերթուածները: կը հրաւիրուին անդամներն ու համակիրները:

ՍԱՆԱՍԱՐԵԱՆ ԴԱՍԸՆԹԱՑՔ Այսօր, ցորեկէն վերջ, Ֆլօրիայի մէջ, ժամը 3.30ին, հայերէն, Մ. Նաթանեան:

Զ. Ե. Ռ. Միութեան Լիոնի Մասնաճիւղի վիճակահանութենէն 190 թիւը շահած է ջութակ մը: Ստանալու համար տոմսակով ներկայանալ՝ Եդուարդ Սալմաստեանի, 202 Rue Boileau.

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Հ. Յ. Դ. Վ.ալանսի շրջ. կոմիտէն իր շնորհակալութիւնը կը յայտնէ Ամերիկահայ ընկ. Հ. Քէփէնէկեանի, որ իր ամուսնութեան առթիւ 500ական ֆրանք նուիրած է կոմիտէին եւ Մալաթիոյ կրթասիրաց միութեան:

## ՇՔԵՂ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ ՏԷՍԻՆԻ ՄԷՋ ՀԱՅԿԱԿԱՆ ԱՆՇԱՐԺ ՍԻՆԷՄԱ

Այս կիրակի գիշեր ժամը 7.30—10.30, բոթրուիի սրահին մէջ:



## ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ ՓՕՆ ՏԸ ՇԷՐԻԻ ՄԷՋ

կազմակերպուած Հ. Յ. Դ. Ակումբ-Գրադարանի կողմէ, այս կիրակի ցունական Ռէվէյի վարի սրահը (Salle Trianon).

կը ներկայացուի՝

''ԶՕՐ. ԱՆԴՐԱՆԻԿ,,

ՄՈՒՏՔ 3 եւ 2 ՖՐԱՆՔ


IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant: H. TEURNIER

